Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ԱՊՐԻԼ 8 1961

ԱՇԽԱՐՀՈՒՄ ԱՌԱՋԻՆԸ ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԹՌԻՉՔ ԿԱՏԱՐԱԾ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑԻՆ

## Մայոր ՅՈՒՐԻ ԱԼԵՔՍԵԵՎԻՉ ԳԱԳԱՐԻՆԻՆ

Թանկագին Յուրի Ալեքսեևիչ:

Ինձ մեծ բերկրանք է պատճառում Ձեզ ջերմորեն շնորհավորել նշանակալից հերոսական սխրանքի՝ «Վոստոկ» արբանյականավով առաջին տիեզերական թռիչքի առթիվ:

Ամբողջ սովետական ժողովուրդը հիացած է Ձեր փառապանծ սխրագործությամբ, որը դարերով կհիշեն որպես մարդկությանը ծառայելու արիության, խիզախության և հերոսության օրինակ:

Ձեր կատարած թռիչքը նոր էջ է բացում Տիեզերքի նվաճման գործում մարդկության պատմության մեջ և սովետական մարդկանց սրտերը համակում է մեծ բերկրանքով և հպարտությամբ իրենց սոցիալիստական Հայրենիքի համար:

Ի սրտե Ձեզ շնորհավորում եմ տիեզերական ճանապարհորդությունից հարազատ երկիր երջանիկ վերադարձի առթիվ:

Գրկում եմ Ձեզ:

Մինչև շուտափույթ հանդիպում Մոսկվայում:

Ն. ԽՐՈՒՇՉՈՎ

12 ապրիլի 1961 թվականի



# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐԸ, ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ

Մայիսի Մեկը աշխատավորների միջազգային համերաշխության օրն է, ամբողջ աշխարհի աշխատավորների մարտական ուժերի ստուգատեսի օրը: Այդ օրը բոլոր երկրների աշխատավորները հանդիսավոր կերպով դրսևորում են իրենց պայքարելու վճռականությունը հանուն բանվոր դասակարգի եղբայրության և միասնության, հանուն մարդկության լավագույն ապագայի՝ կոմունիզմի:

1886 թվականի մայիսի մեկին համարյա ամբողջ Ամերիկայի Միացյալ Նահանգներում բռնկվել էր բանվորական գործադուլների ու ցույցերի վիթխարի ալիք, բանվոր դասակարգը պայքարի դրոշ էր բարձրացրել ամերիկյան շահագործողների դեմ: Դաժան շահագործման տակ գտնվող բանվորները, դուրս գալով փողոց, պահանջում էին աշխատանքային պայմանների բարելավում և

8-ժամյա բանվորական օր։ Ոստիկանությունը արյան մեջ խեղդեց բանվորների գործադուլը։ Մայիսի 4-ին Չիկագոյում բողոքի մասսայական միտինգ կայացավ. միտինգի ժամանակ պրովոկատորները ռումբ պայթեցրին, որի հետևանքով կառավարությունը կեղծ ցուցմունքների հիման վրա մահապատժի դատապարտեց միտինգի մի շարք աչքի ընկնող կազմակերպիչների, իսկ շատերին նետեց բանտերը։ Ամբողջ աշխարհի բանվորները բողոքեցին բանվոր դասակարգի նկատմամբ ամերիկյան կառավարության այդ դաժան դատաստանի դեմ։ Մայիսյան այդ դեպքերը ցույց տվեցին, թե կապիտալիստական կարգերի դեմ հաջողությամբ պայքարելու համար որքան անհրաժեշտ է բոլոր երկրների պրոլետարների միջազգային համերաշխությունը։

1889 թվականի հուլիսին Երկրորդ ինտերնացիոնալի Փարիզի կոնգրեսը, պրոլետարիատի միջազգային համերաշխության հաստատման նպատակով, որոշեց մայիսի մեկը նշել որպես միջազգային տոն, որպես բոլոր երկրների աշխատավորների ուժերի մարտական ստուգատեսի օր։ Այդ որոշման հիման վրա 1890 թվականից սկսած ամեն տարի ամբողջ աշխարհի աշխատավորները





«Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական նշանաբանով տոնում են Մայիսի Մեկը, բոլոր երկրների ռևոլյուցիոն ուժերի համերաշխության և ինտերնացիոնալ եղբայրության օրը։

Ռուսաստանում առաջին անգամ Մայիսի 1-ը տոնվեց 1891 թվականին, Պետերբուրգում։ Հենց սկզբից մայիսմեկյան տոնակատարությունը Ռուսաստանում վերածվեց ցարական ինքնակալության և կապիտալիզմի դեմ մղվող անհաշտ ռևոլյուցիոն պայքարի։ Ցարական կառավարությունը դաժանորեն ճնշում էր աշխատավորների մայիսմեկյան ելույթները, արյան մեջ խեղդում բանվորների գործադուլներն ու ցույցերը։ Միայն 1917 թվականի Փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ, ցարիզմի տապալումից հետո, առաջին անգամ Ռուսաստանում հնարավոր դարձավ ազատ կերպով տոնել Մայիսի Մեկը։

1917 թվականի մայիսմեկյան ցույցերը մեծ դեր խաղացին սոցիալիստական ռևոլյուցիայի համար աշխատավորական մասսաներին նախապատրաստելու գործում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո՝ 1918 թվականին, մեր երկրի բանվոր դասակարգը Մայիսի Մեկը

առաջին անգամ տոնեց որպես իշխանությունը նվաճած, իր դիկտատուրան հաստատած դասակարգ։ Այնուհետև յուրաքանչյուր տարի Մայիսի Մեկի տոնակատարությունը մեր երկրում վերածվում է սոցիալիստական և կոմունիստական շինարարության գործում ձեռք բերված նվաճումների, Կոմունիստական պարտիայի շուրջը սովետական ժողովրդի սերտ համախմբվածության, ամբողջ աշխարհի աշխատավորների հետ սերտ համերաշխության վառ ցույցի։

Մայիսմեկյան առաջին տոնակատարությունից անցել է 71 տարի։ Հաստատված տրադիցիայի համաձայն մայիսյան տոնին ամբողջ աշխարհի աշխատավորները ի մի են բերում խաղաղության, դեմոկրատիայի, ազգային ազատագրության և սոցիալական պրոգրեսի համար մղած պայքարում ձեռք բերած նվաճումները, դրսևորում են իրենց համերաշխությունը և ինտերնացիոնալ միասնությունը, ռեակցիայի սև ուժերի դեմ պայքարելու անսասան վճռականությունը։



Այս տարի աշխատավորների միջազգային համերաշխության օրը՝ Մայիսի Մեկը, սովետական ժողովուրդը դիմավորում է կոմունիզմի կառուցման գործում ձեռք բե-



րած մեծ հաջողությունների, յոթնամյա պլանի և ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի պատմական որոշումների կատարման համար մղվող վճռական պայքարի, պարտիայի XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական լայն մրցության, աշխատավորների քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր հուժկու վերելքի պայմաններում։

Կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի հաստատած յոթնամյա պլանի վիթխարի խնդիրները, սովետական ժողովուրդը 1960 թվականին նոր հաջողություններ ձեռք բերեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման և աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացման ասպարեզում։ Արդյունաբերության զարգացման 1960 թվականի պլանը կատարվեց ժամկետից շուտ, նրա արտադրանքի աճն զգալիորեն գերազանցեց յոթնամյա պլանով նախատեսված հաշվումները։ Յոթնամյակի երկու տարում արդյունաբերական արտադրանքի ծավալը ավելացավ 22,1 տոկոսով, պլանով նախատեսված 17 տոկոսի փոխարեն։ Այդ նշանակում է, որ մեր երկիրը լրացուցիչ ստացավ 11,3 միլիարդ ռուբլու (գների նոր մասշտաբով) արտադրանք։

Դա մեծ հաղթանակ է մեր արդյունաբերության զարգացման գործում, որ ձեռք բերվեց բանվորների, ինժեներների, տեխնիկների ու գիտնականների ջանքերով։

1960 թվականին մեր երկիրն արտադրեց չուգուն՝ 46,8 միլիոն տոննա, պողպատ՝ 65,3 միլիոն, գլանվածք՝ 50,9 միլիոն, երկաթի հանքաքար՝ 107 միլիոն, նավթ՝ 148 միլիոն տոննա, գազ՝ 47 միլիարդ խորանարդ մետր, էլեկտրաէներգիա՝ 292 միլիարդ կիլովատ-ժամ։ Այդ նշանակում է, որ 1959 թվականի համեմատությամբ արդյունաբերության առաջատար ճյուղերի արտադրանքը աճել է. չուգունինը՝ 3,8 միլիոն տոննայով, պողպատինը՝ 5,3 միլիոն, գլանվածքինը՝ 3,9 միլիոն, երկաթի հանքաքարինը՝ 12,1 միլիոն, նավթինը՝ 18 միլիոն տոննայով, գազինը՝ 10 միլիարդ խորանարդ մետրով, էլեկտրաէներգիայինը՝ ավելի քան 27 միլիարդ կիլովատ-ժամով։

Այս թվերը համոզիչ կերպով ցույց են տալիս, որ ՍՄԿՊ XXI համագումարի կողմից առաջադրված կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը սովետական ժողովուրդը լուծում է ավելի արագ տեմպերով, քան նախատեսված է յոթնամյա պլանով։



Մեր երկիրը նորանոր բնագծեր է նվաճում կապիտալիզմի հետ խաղաղ մրցության ասպարեզում. դրանով ամբողջ աշխարհին ցույց է տալիս սոցիալիզմի մեծ կենսունակությունը և համաշխարհային պատմական առավելությունները։ Մեզանում արդյունաբերության անշեղ աճը տեղի է ունենում տեխնիկական պրոգրեսի արագ տեմպերի պայմաններում։ 1960 թվականին նախագծվել և պատրաստվել են մոտ 2.500 նոր կարևորագույն տիպի մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ և այլ սարքավորումներ, ինչպես նաև արտադրության վերահսկման ավտոմատացման ավելի քան 500 նոր տիպի սարքեր։

Նոր տեխնիկայի ներդրման հիման վրա անշեղորեն աճում է աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության բոլոր ճյուղերում։ 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ ավելի քան 5 տոկոսով, իսկ եթե հաշվի առնենք այն, որ անցյալ տարի ավարտվեց բոլոր աշխատավորների անցումը կրճատ աշխատանքային օրվա, ապա աշխատանքի մեկ ժամվա արտադրողականությունը աճեց ա-

վելի քան 10 տոկոսով, իսկ չորրորդ եռամսյակում՝ 12 տոկոսով։

1960 թվականին գերակատարվեց արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանը։ Ամբողջ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցումից ստացված արտապլանային խնայողությունը կազմեց մոտավորապես 500 միլիոն ռուբլի (գների նոր մասշտաբով)։ 1960 թվականին զգալիորեն ավելացավ նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Գործվածքների արտադրությունն ավելացավ 290 միլիոն քառ. մետրով, տրիկոտաժե սպիտակեղենինը և վերնազգեստինը՝ համարյա 40 միլիոն հատով, կաշվե կոշիկեղենինը՝ 28 միլիոն զույգով, կահույքինը՝ 169 միլիոն ռուբլով, մսինը՝ (արդյունաբերական վերամշակումը) 202 հազար տոննայով, կաթինը, պանրինը և ուրիշ տեսակի կաթնամթերքներինը կաթի վերածած՝ մեկ միլիոն տոննայով, շաքարինը՝ 349 հազար տոննայով։

Յոթնամյակի առաջին երկու տարվա արդյունքները ցույց են տալիս, որ մենք ունենք բոլոր հնարավորությունները արդյունաբերության բոլոր ճյուղերի գծով յոթնամյա պլանի առաջադրանքներն զգալիորեն գե-



րակատարելու համար։ Վերցնենք, օրինակ, սև մետալուրգիան. յոթնամյա պլանով նախատեսված է 1965 թվականին պողպատի ձուլումը հասցնել 86—91 միլիոն տոննայի։ Արդեն 1960 թվականին արտադրվեց 65,3 միլիոն տոննա պողպատ, իսկ 1961 թվականին կարտադրվի առնվազն 71 միլիոն տոննա։ Եթե պողպատի արտադրության ամենամյա աճը շարունակենք պահպանել յոթնամյակի առաջին 3 տարիների մակարդակի վրա, ապա 1965 թվականին պողպատի ձուլումը կկազմի 100—102 միլիոն տոննա։ Սակայն, ինչպես նշել է ընկ. Խրուշչովը, մենք այսուհետև ըստ երևույթին չենք շարունակի սև մետալուրգիան մեր հնարավորության մինչև վերջին սահմանները զարգացնելու քաղաքականությունը։ Մենք կապիտալ ներդրումների մի մասը կտեղափոխենք գյուղատնտեսության և թեթև արդյունաբերության մեջ, որպեսզի ավելի շատ արտադրենք պարենամթերք, հագուստեղեն, կառուցենք բնակարաններ, էլ ավելի բարձրացնենք սովետական մարդկանց բարեկեցությունը։

Անցյալ տարի, չնայած երկրի առանձին շրջաններում եղանակի անբարենպաստ պայմաններին, գյուղատնտեսության աշ-

խատողները լուրջ հաջողությունների հասան: Նախորդ տարվա համեմատությամբ ցանքատարածություններն ավելացան 6,7 միլիոն հեկտարով, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ 45,8 միլիոն հեկտարով և ներկայումս կազմում են 203 միլիոն հեկտար: Նախնական տվյալներով 1960 թվականին հացահատիկի համախառն բերքը կազմեց 8 միլիարդ 131 միլիոն փութ, որը 1959 թվականից 445 միլիոն փթով ավելի է: Նախորդ տարվա համեմատությամբ ավելացավ նաև շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կարտոֆիլի, բանջարեղենի և այլ կուլտուրաների համախառն արտադրանքը: Անցյալ տարի ավելացան անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում, անասնաբուծական մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը:

1960 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվել է 61,5 միլիոն տոննա կաթ, իսկ ԱՄՆ-ում, ըստ նրա պաշտոնական տվյալների, արտադրվել է 56,9 միլիոն տոննա: 1960 թվականին մեր երկրում յուղի ընդհանուր արտադրությունը կազմեց 848 հազար տոննա, կամ բնակչության յուրաքանչյուր շնչին՝ 4 կգ: ԱՄՆ-ում 1960 թվականին արտադրվել է 665 հազար տոննա յուղ կամ բը-



նակչության յուրաքանչյուր շնչին 3,7 կգ: Թեև գյուղատնտեսության զարգացման ասպարեզում վերջին տարիներս ձեռք բերվեցին անվիճելի հաջողություններ, սակայն, ինչպես նշեց ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը, գյուղատնտեսական մթերքների, հատկապես անասնաբուծական մթերքների արտադրության աճի ներկա մակարդակը ու տեմպերը բավարար չեն:

Պլենումը խնդիր դրեց հասնել այնպիսի մակարդակի, որ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը միշտ գերազանցի բնակչության պահանջարկը: Այդ կապակցությամբ ընկ. Խրուշչովը պլենումում ասաց. «Գյուղատնտեսության զարգացման հարցերը պետք է լինեն մեր պարտիայի ուշադրության կենտրոնում: Առանց լավ զարգացած գյուղատնտեսության, առանց գյուղատնտեսական մթերքների առատության ծաղկող սոցիալիստական էկոնոմիկա լինել չի կարող: Գյուղատնտեսության անշեղ վերելքի համար պայքարը կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն պայմանն է: Դա հիրավի համաժողովրդական գործ է»: Հունվարյան պլենումը առաջիկա տարիներին երկրի պահանջմունքները լրիվ բավարարելու նպատակով խնդիր

դրեց հացահատիկի տարեկան գնումները հասցնել 4 միլիարդ 200 միլիոն փթի, մսինը՝ 13 միլիոն, կաթինը՝ 50 միլիոն տոննայի։

Այս մակարդակին հասնելու համար պլենումը պահանջեց բարձրացնել հացահատիկի, եգիպտացորենի բերքատվությունը, ավելացնել կովերի գլխաքանակը, ըստ ամենայնի զարգացնել խոզաբուծությունն ու թռչնաբուծությունը, ստեղծել կերի ամուր բազա, լայնորեն արմատավորել գյուղատնտեսական արտադրության առաջավորների և նորարարների փորձը, որպես մի փարոս, որը ցույց է տալիս յուրաքանչյուր տնտեսության մեջ արտադրության բարձր մակարդակը ապահովելու ուղին։

Այս մեծ խնդիրների կենսագործման համար Հունվարյան պլենումը պահանջեց է՛լ ավելի բարելավել գյուղատնտեսության ղեկավարումը, ուժեղացնել կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, ուշադրությունը կենտրոնացնել կոլտնտեսությունների և սովխոզների կազմակերպչական-տնտեսական հետագա ամրապնդման, կադրերի ճիշտ ընտրության և դաստիարակության, կոլտնտեսականների բարեկեցության բարձրացման վրա։





Մայիսի Մեկը տնտեսության և կուլտուրայի բնագավառներում հիանալի հաջողություններով է դիմավորում ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների մեծ ընտանիքում ազգային իսկական վերածնունդ ապրող հայ ժողովուրդը։ Անցյալ տարի, Հայաստանում Սովետական իշխանության և Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակի պատվին ծավալելով սոցիալիստական մրցություն, ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները տարեկան պլանը կատարեցին 102 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի համախառն ծավալը նախատեսված 10,5 տոկոսի փոխարեն նախորդ տարվա համեմատությամբ աճեց գրեթե 12 տոկոսով։

Նշանակալից է այն, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը յոթնամյակի երկու տարում պլանով նախատեսված 17,5 տոկոսի փոխարեն ավելացավ 25,1 տոկոսով։

1960 թվականին նախորդ տարվա համեմատությամբ Հայաստանի սև և գունավոր մետալուրգիայի արտադրանքն ավելացավ 18 տոկոսով, մեքենաշինությունը և մետաղամշակությունը՝ 30, քիմիական արդյունա-

բերության՝ 16, շինանյութերի արդյունաբերության՝ 21 տոկոսով և այլն։ Անցյալ տարի ռեսպուբլիկայում շարք մտան 12 նոր արդյունաբերական ձեռնարկություններ և մի շարք արտադրական ցեխեր։ Յուրացվեց արդյունաբերական արտադրանքի ավելի քան 100 նոր տեսակ։

Անցյալ տարի պետական հիմնարկները, ձեռնարկությունները և կոոպերատիվ կազմակերպությունները կառուցեցին ու շահագործման հանձնեցին 233,9 հազար քառ. մետր բնակելի տարածություն, 23 դպրոց և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ։ Բացի այդ, սեփական խնայողություններով և պետական վարկով քաղաքային բնակչությունը կառուցեց մոտ 200 հազար քառ. մետր տարածությամբ բնակելի տներ, իսկ գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու ինտելիգենցիան կառուցեցին մոտ 9 հազար տուն։

Ռեսպուբլիկայում մեծ աշխատանք կատարվեց արդյունաբերական ձեռնարկությունների, կոմունալ շենքերի և բնակարանների գազիֆիկացման գործում։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները անցյալ տարի զգալիորեն ավելացրին գյուղատնտեսական մթերքների ար-



տադրությունը։ Նախորդ տարվա համեմատությամբ հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը ավելացավ 4 տոկոսով, բամբակինը՝ 23, շաքարի ճակնդեղինը (ֆաբրիկային)՝ 10, կարտոֆիլինը՝ 13, սիլոսացու եգիպտացորենինը՝ 28, խոտինը՝ 14 տոկոսով։ Անցյալ տարի ռեսպուբլիկան պետությանը մսի վաճառքի պլանը կատարեց 112 տոկոսով, կաթինը՝ 105 տոկոսով։ Ռեսպուբլիկայում նոր հաջողություններ ձեռք բերվեցին նաև գիտության ու կուլտուրայի զարգացման բնագավառում։

Այս տարի Հայաստանի աշխատավորները մայիսմեկյան տոնը դիմավորում են Հունվարյան պլենումի պատմական որոշումների կենսագործման և պարտիայի XXII համագումարը արժանավայել գործերով դիմավորելու աշխատանքային մեծ վերելքի պայմաններում։ Մայիսմեկյան տոներից անմիջապես հետո, մայիսի 6-ին և 7-ին նշվելու է Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակը։ Այդ տոնակատարությանը մասնակցելու է խաղաղության համաշխարհային դրոշակակիր, կոմունիզմի անխոնջ մարտիկ Ն. Ս. Խրուշչովը։

Սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունների հիման վրա անցյալ տարի է՛լ ավելի բարձրացավ սովետական ժողովրդի բարեկեցությունը։ ՍՍՌՄ-ի ազգային եկամուտը նախնական տվյալներով անցյալ մեկ տարում աճեց 8 տոկոսով և կազմեց 144 միլիարդ (գների նոր մասշտաբով) ռուբլի։ Աշխատավորների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով ավելացան 5 տոկոսով։ Բնակչությունը 1960 թվականին սպառման հանրային ֆոնդերից ժողովրդական կրթության, բուժսպասարկման, սոցիալական ապահովության և զանազան վճարումների ու արտոնությունների համար ստացավ 24,5 միլիարդ ռուբլի, նախորդ տարվա 23 միլիարդ ռուբլու դիմաց (գների նոր մասշտաբով)։

1960 թվականին մեր երկրում ավարտվեց բոլոր բանվորների ու ծառայողների փոխադրումը 7 ժամյա և 6-ժամյա աշխատանքային օրվա։ Կրճատ աշխատանքային օրվա փոխադրումը կատարվեց աշխատավարձի պահպանմամբ և միաժամանակ ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձի զգալի բարձրացմամբ։ Բացի այդ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի որոշում-





ների համապատասխան 1960 թվականի հոկտեմբերի 1-ից սկսվել է բանվորներից ու ծառայողներից գանձվող հարկերի աստիճանական վերացումը։

Ժողովրդի բարեկեցիկ կյանքի կարևորագույն ցուցանիշներից մեկը բնակարանային ապահովվածությունն է։ Այդ նպատակով էլ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը խնդիր են դրել առաջիկա տարիներին հասնել երկրում բնակարանային պակասի հիմնովին վերացմանը։ Վերջին տարիների ընթացքում մեր երկրում ծավալվել է բնակարանային վիթխարի շինարարություն։ Միայն 1960 թվականին քաղաքներում և քաղաքատիպ ավաններում կառուցվեց և շահագործման հանձնվեց 85 միլիոն քառակուսի մետր մակերեսով բնակելի տարածություն կամ մոտ 2 միլիոն 400 հազար բնակարան, նախորդ տարվա 2 միլիոն 237 հազար բնակարանի դիմաց։ Բացի այդ, կոլտնտեսականները և գյուղական ինտելիգենցիան անցյալ տարի կառուցեցին 625 հազար բնակելի տուն։ Ավելի ընդարձակվեց հիվանդանոցների, ծննդատների, դիսպանսերների, կանանց ու մանկական կոնսուլտացիաների և առողջապահության այլ հիմնարկների ցանցը։





Մանկամսուրներում ու մանկապարտեզներում երեխաների թիվը ավելացավ գրեթե 460 հազարով, իսկ սանատորիաներում ու հանգստյան տներում մահճակալների թիվը՝ 12 հազարով։ Բնակչության նյութական բարեկեցության բարձրացման, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, նրա առողջության պահպանման ուղղությամբ պարտիայի ու կառավարության կենսագործած միջոցառումներն ապահովել են ծննդաբերության բարձր մակարդակի պահպանում և մահացության նվազում։ ՍՍՌՄ-ը շարունակում է մնալ բնակչության ընդհանուր մահացության ամենացածր մակարդակ ունեցող երկիրը աշխարհում։ 1961 թվականի հունվարի 1-ի դրությամբ մեր երկրի բնակչության թիվը նախնական տվյալներով հասել է 216 միլիոնի կամ մեկ տարում բնակչությունը ավելացել է մոտ 4 միլիոնով։

Սովետական ժողովուրդը աշխատավորների միջազգային համերաշխության օրը դիմավորում է նաև ժողովրդական կրթության, կուլտուրայի և գիտության ասպարեզում ձեռք բերված նոր նվաճումներով։ 1960 թվականին մեր երկրում ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված սովորողների թիվը կազմեց 52 միլիոն մարդ։ 753 բարձրագույն



ու 3329 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, ներառյալ հեռակա և երեկոյան հաստատությունները, ներկայումս սովորում են 4 միլիոն 450 հազար մարդ։ ՍՍՌՄ-ի բուհերում սովորում են 2 միլիոն 300 հազար ուսանողներ, որը մոտ 4 անգամ ավելի է, քան Անգլիայի, Ֆրանսիայի, ԳՖՌ-ի և Իտալիայի ուսանողների թիվը միասին վերցրած։

1960 թվականին երկրի բուհերն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հիմնարկներն ավարտեցին 820 հազար մասնագետներ, որից՝ 117 հազար ինժեներ։ Այժմ մեզանում գիտական աշխատողների թիվը անցնում է 350 հազարից։

Բուռն ծաղկում է ապրում սովետական գիտությունը։ Սովետական գիտնականները համաշխարհային գիտության առջևից են ընթանում Տիեզերքը նվաճելու մեծ գործում։ Մեր գիտնականները առաջինը հրթիռ ուղարկեցին Տիեզերք։ Սովետական վիմպելն արդեն վաղուց ի վեր Լուսնի վրա է։ Մեր գիտնականները լուսանկարեցին Լուսնի անտեսանելի կողմը և դրանով իսկ փայլուն էջ գրեցին գիտության ու տեխնիկայի զարգացման պատմության մեջ, ապացուցելով մարդկային հանճարի անսպառ հնարավոր-

թությունները։ Սովետական մարդիկ առաջինը հզոր հրթիռ ուղարկեցին դեպի Վեներա։

1961 թվականի մարտի 25-ին Սովետական Միությունում Երկրի շուրջը ուղեծիր դուրս բերվեց հինգերորդ արբանյականավը՝ 4695 կիլոգրամ քաշով, չհաշված տանող հրթիռի վերջին աստիճանի կշիռը։ Սա արդեն սովետական երրորդ արբանյականավն է, որը հաջող վայրէջք է կատարում Երկրի նախատեսված շրջանում։ Մոտ երեք և կես տարի է անցել այն օրվանից, երբ աշխարհում առաջին անգամ ուղեծիր դուրս բերվեց Երկրի սովետական արհեստական արբանյակը, իսկ այսօր Տիեզերքից արբանյականավերի վայրէջքը Երկրի վրա սովորական է դառնում։

Այս տարվա ապրիլի 12-ին սովետական գիտությունը նոր և փայլուն հաղթանակ տարավ․ սովետական մարդը առաջինը դուրս եկավ տիեզերական ճանապարհորդության և երկրագնդի շուրջը թռիչք կատարելուց հետո հաջողությամբ Երկիր վերադարձավ։



Աշխատավորների միջազգային համերաշխության օրը տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք բերած նոր նվաճումներով են դիմավորում սոցիա-



լիստական լագերի բոլոր երկրների աշխատավորները։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը թևակոխել է իր զարգացման նոր փուլը։ Սովետական Միությունը հաջողությամբ իրագործում է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցումը։ Սոցիալիստական լագերի մյուս երկրները հաջողությամբ սոցիալիզմի հիմքերն են դնում, իսկ նրանցից մի քանիսն արդեն թևակոխել են զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանը։

Չինական ժողովրդական ռեսպուբլիկայում 1959 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի ծավալը աճեց մոտ 9,5 անգամ, Լեհաստանում՝ ավելի քան 3, Չեխոսլովակիայում՝ 2,5, ԳԴՌ-ում՝ 2,7, Հունգարիայում՝ 2,4, Ռումինիայում՝ մոտ 3, Բուլղարիայում՝ 3,5, Ալբանիայում՝ մոտ 5,5, ԿԺԴՌ-ում՝ 8,6, Մոնղոլիայում՝ 2,4 անգամ։ Ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում վերջին տարիներս արդեն լուծվել կամ հաջողությամբ լուծվում է սոցիալիստական շինարարության դժվարին հարցը՝ գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը։ Այդ երկրներում գյուղատնտեսական արտադրու-

թյան մեջ սոցիալիստական սեկտորն արդեն դարձել է առաջատար, տիրապետող։ Լուծվել է «ով ումի» հարցը հօգուտ սոցիալիզմի։ Պետական և կոոպերատիվ տնտեսությունները ԿԺԴՌ-ում մշակում են ցանքատարածությունների 100 տոկոսը, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում՝ 99,7, Չինաստանում՝ 99,1, Բուլղարիայում՝ 98, ԳԴՌ-ում՝ 96, Ալբանիայում՝ 85, Չեխոսլովակիայում՝ 84,4, Ռումինիայում՝ 81,3, Հունգարիայում՝ 71,3, Վիետնամի Ժողովրդական Ռեսպուբլիկայում՝ 72,7 տոկոսը։

Անշեղորեն բարձրանում են ժողովրդական մասսաների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։ Չինաստանում վերջին տասը տարում կառուցվել են 350 միլիոն քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ և հասարակական շենքեր։ ԳԴՌ-ում վերջին 2 տարում կառուցվել է 143 հազար բնակարան, Հունգարիայում՝ 88,4 հազար բնակարան։ Բնակչության յուրաքանչյուր հազար շնչին ընկնող բժիշկների թվով Չեխոսլովակիան, Բուլղարիան, Հունգարիան և Ռումինիան մտնում են աշխարհի առաջավոր երկրների շարքը։

Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների տնտեսական ու կուլ-



տուրական բուռն զարգացումը հարաճուն ազդեցություն է գործում կապիտալիստական երկրների ժողովուրդների վրա։ Իր օրինակով սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հեղափոխում է կապիտալիստական աշխարհի աշխատավորների մտքերը, նրանց պայքարի է ոգեշնչում ընդդեմ կապիտալիզմի, հանուն խաղաղության, ազգային անկախության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

Գնալով ավելի է ամրապնդվում սոցիալիստական երկրների միասնությունն ու համերաշխությունը։ Այդ գործում խոշոր դեր կխաղան վերջերս Մոսկվայում կայացած Վարշավայի պայմանագրի մասնակից տերությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի նիստում ընդունված որոշումները։ Սոցիալիստական լագերը դարձել է ընդհանուր շահերով ու նպատակներով միավորված, սոցիալիզմի ու կոմունիզմի ուղիով ընթացող ազատ, սուվերեն ժողովուրդների սոցիալական, տնտեսական ու քաղաքական մեծ համագործակցություն, որը խարսխվում է մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքների վրա։



Աշխատավորների միջազգային համերաշխության օրը նոր իրադարձության մեջ են

դիմավորում կապիտալի լծի տակ տառապող միլիոնավոր աշխատավորական մասսաները։

Կապիտալիստական երկրներում բազմապատկվում են այն ուժերը, որոնք պայքարում են կապիտալի տիրապետության դեմ, հանուն իրենց կենսապայմանների բարելավման, հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի։ Համաշխարհային կապիտալիստական սիստեմը անկման և քայքայման խոր պրոցես է ապրում։ Նոր էտապ է սկսվել կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի զարգացման մեջ։ Սրվում են կապիտալիզմի հակասությունները ինչպես ազգային, այնպես էլ միջազգային մասշտաբով։

Կապիտալիզմի նեխումը առավել մեծ ուժով է դրսևորվում ժամանակակից իմպերիալիզմի գլխավոր երկրում՝ ԱՄՆ-ում, որը դարձել է խրոնիկական գործազրկության և արդյունաբերության հարաճուն թերաբեռնվածության երկիր։ Կապիտալիզմի այդ առավել զարգացած երկիրը դարձել է այլանդակ ռազմականացված էկոնոմիկայով երկիր։ Սպառազինությունների ծանր բեռն ընկած է աշխատավորական մասսաների վրա։ ԱՄՆ-ում 1961—62 թվականների համար նախատեսված 80,9 միլիարդ դոլլար



պետական բյուջեից 47,4 միլիարդը կամ 58 տոկոսը կազմում են ռազմական ծախսերը։ ԱՄՆ-ի գիտնականների և ինժեներների 1/3-ից ավելին զբաղված է ռազմական արդյունաբերության մեջ։

ԱՄՆ-ի իմպերիալիզմը, Ասիայի, Աֆրիկայի և հատկապես Լատինական Ամերիկայի ժողովուրդներին զրկելով ազգային իսկական անկախությունից ու դեմոկրատական ազատություններից և անխնա կերպով կողոպտելով նրանց, դարձել է միջազգային ամենախոշոր շահագործողը, համաշխարհային ռեակցիայի գլխավոր հենարանը, ամբողջ աշխարհի ժողովուրդների թշնամին։

Կապիտալի ճիրաններում տառապող ժողովուրդներն ավելի ու ավելի վճռականորեն են հանդես գալիս իմպերիալիստական մոնոպոլիաների, նոր պատերազմի նախապատրաստման դեմ, հանուն դեմոկրատական իրավունքների և սոցիալական պրոգրեսի։ Ժողովրդական մասսաների ակտիվ ելույթներ են տեղի ունենում Ճապոնիայում, Ֆրանսիայում, Իսպանիայում, Պորտուգալիայում, գործադուլային խոշոր շարժում է ծավալվել ԱՄՆ-ում, Արգենտինայում, Անգլիայում, Կանադայում, Բելգիայում և կապիտալիստական մյուս երկրնե-

րում։ Միայն 1960 թվականին ԱՄՆ-ում
պաշտոնական տվյալներով տեղի է ունեցել
3.300 գործադուլ, որին մասնակցել են 1 մի-
լիոն 400 հազար բանվորներ։

1960 թվականի վերջին և 1961 թվականի
սկզբին բանվորական խոշոր ելույթներ տե-
ղի ունեցան Բելգիայում։ Այդ շարժումներին
մասնակցեցին մեկ միլիոնից ավելի բան-
վորներ և ծառայողներ, որը կազմում է երկ-
րի աշխատավորների մոտավորապես կեսը։
Բելգիայի բանվորական շարժման պատ-
մության մեջ դեռևս չէր եղել պայքարի այդ-
պիսի մեծ թափ։

Գործադուլը, որն սկսվեց դեկտեմբերի
20-ին, տևեց ավելի քան մեկ ամիս, ուղղված
էր կառավարության միասնական օրենքի
օրինագծի դեմ, որը նախատեսում էր բարձ-
րացնել հարկերը, կրճատել աշխատավարձը,
կենսաթոշակները և գործազրկության հա-
մար տրվող նպաստները։

Նա ընդգրկեց բոլոր պրոֆեսիաների, ար-
դյունաբերական բոլոր հիմնական շրջաննե-
րի բանվորներին, նրան մասնակցեցին
ամենատարբեր քաղաքական պարտիանե-
րում և արհմիություններում միավորված
աշխատավորները։ Դա բանվորների, բոլոր
աշխատավորների համերաշխության և գոր-



ծողությունների միասնության արտահայ-
տությունն էր։ Գործադուլը ճնշելու համար
կառավարությունը գործի դրեց ոչ միայն
ոստիկանական ուժերը, այլև կանոնավոր
բանակի զորամասերը, որոնք ավտոմատնե-
րից և գնդացիրներից կրակ բացեցին գոր-
ծադուլավորների վրա։ Սակայն պայքարի ե-
լած բանվորները չնահանջեցին։ Գործադուլը
նոր հզոր հարված հասցրեց «դասակարգա-
յին հաշտության» մասին բուրժուական թեո-
րիաներին։ Այդ գործադուլի նշանակությու-
նը մեծ է նաև այն առումով, որ ամբողջ
կապիտալիստական աշխարհում Բելգիան
պրոպագանդվում է որպես «ժողովրդական
բարեկեցության պետության» տիպար, ուր
դասակարգային հարաբերություններն իբրև
թե «անխռով», «հաշտ ու խաղաղ» են։ Եվ պա-
տահական չէ, որ Բելգիական բանվորական
այդ գործադուլը մեծ տագնապ առաջ բերեց
Անգլիայի և Շվեդիայի աջ սոցիալ-դեմո-
կրատական շրջաններում։

1960 թվականի 10 ամսում Անգլիայում
տեղի ունեցավ 2427 գործադուլ, որին մաս-
նակցեց 708 հազար մարդ, որն զգալի
չափով ավելի է նախորդ տարվա համեմա-
տությամբ։

1959—60 թվականներին գործադուլային

հզոր շարժումներ տեղի ունեցան Իտալիա֊յում։ Միայն 1959 թվականին գործադուլի դուրս եկան ավելի քան 5 միլիոն բանվոր֊ներ, որը նախորդ տարվա համեմատու֊թյամբ 2 անգամ ավելի էր։

Արևմտյան Գերմանիայում 1960 թվակա֊նի սկզբին իրենց նյութական դրության բա֊րելավման համար ծավալված պայքարին մասնակցեցին մոտ 10 միլիոն բանվորներ։

Ներկայումս բանվորական շարժման հա֊մար ավելի բնորոշ է պրոլետարական հա֊մերաշխությունը և տարբեր համոզմունքնե֊րի տեր աշխատավորների ձգտումը դեպի միասնական գործողությունների։

Միլիոնավոր աշխատավորական մասսա֊ները ավելի ու ավելի են համոզվում այն բանում, որ կապիտալի դեմ մղվող պայքա֊րում թե՛ ազգային և թե՛ միջազգային մա֊սշտաբով հաջողությունը կախված է պրո֊լետարիատի ինտերնացիոնալ միասնու֊թյունից։



Միջազգային պրոլետարիատը, բոլոր եր֊կրների աշխատավորները իրենց համե֊րաշխության մեծ տոնը այս տարի նշում են համաշխարհային կոմունիստական և բան֊վորական հետագա շարժման ծավալման,



իրենց ինտերնացիոնալ միասնության ամ֊րապնդման պայմաններում։ Համաշխարհա֊յին կոմունիստական շարժումը դարձել է մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքա֊կան ուժը, դարձել է հասարակական առա֊ջադիմության կարևորագույն գործոնը։ Իմ֊պերիալիստական ռեակցիայի դեմ, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շա֊հերի համար, խաղաղության, ազգային ան֊կախության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող կատաղի պայքարում կոմու֊նիստական շարժումն անշեղորեն ընթանում է առաջ, համախմբվում և կոփվում։ Եթե Մարքսի և Էնգելսի ստեղծած Կոմունիստ֊ների Միության շարքերում կար 300 անդամ, 1917 թվականի հոկտեմբերին՝ 400 հազար, երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին՝ 4 միլիոն 200 հազար, ապա ներկայումս աշխարհի 87 բանվորական ու կոմունիստական պարտիաներում կա ավելի քան 36 միլիոն կոմունիստ։ Դա մարքսիզմ֊լենինիզմի մեծ հաղթանակն է, բանվոր դա֊սակարգի վիթխարի նվաճումը։

Նոր կոմունիստական և բանվորական պարտիաներ են ձևավորվում գաղութային լուծը թոթափած և ինքնուրույն զարգացման ուղին թևակոխած երկրներում։ Կոմունիս֊

տական պարտիաները, կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտականությունը, ամեն կերպ նպաստում են, որպեսզի ամրապնդվեն իրենց երկրների բանվոր դասակարգի բարեկամությունն ու համերաշխությունը գաղութային ճնշումից ազատագրված երկրների բանվորական շարժման հետ, իմպերիալիզմի դեմ մղվող ճամատեղ պայքարում։ Միջազգային կոմունիստական և բանվորական շարժման պատմության մեջ խոշոր իրադարձություն է 1960 թվականի նոյեմբերի 10-ից դեկտեմբերի 1-ը Մոսկվայում կայացած 81 երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցությունը, որը ամենաներկայացուցչականն էր համաշխարհային կոմունիստական շարժման պատմության մեջ։ Կոմունիստների համաշխարհային այդ ֆորումում մասնակցեցին սոցիալիստական երկրներում իշխանության գլուխ կանգնած կոմունիստական պարտիաների, կապիտալիստական երկրներում իմպերիալիստական բուրժուազիայի տիրապետության դեմ պայքարող կոմունիստական պարտիաների ներկայացուցիչները, ինչպես նաև Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի գաղութային ճնշումից ազատագր-



ված կամ ազգային անկախության համար պայքարող մի շարք երկրների կոմպարտիաների ներկայացուցիչները։ Խորհրդակցության մասնակիցները միահամուռ կերպով ընդունեցին Հայտարարություն և ամբողջ աշխարհի ժողովուրդներին ուղղված Դիմում, որոնցում ընդհանրացված է կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման վերջին տարիների փորձը, ամփոփված են համաշխարհային սոցիալիստական սիստեմի նվաճումները, տրված է արդի դարաշրջանի մարքս-լենինյան ծավալուն վերլուծությունն ու բնութագիրը, նշված խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարի հետագա խնդիրները։ Այդ պատմական փաստաթղթերն իրենց վրա են գրավել ամբողջ մարդկության ուշադրությունը, որը վկայում է կոմունիստական շարժման հսկայական քաղաքական ազդեցության մասին։

Հայտարարության մեջ նշված է, որ կոմունիստական պարտիաները գաղափարապես ջախջախեցին իրենց շարքերում եղած ռևիզիոնիստներին, որոնք փորձում էին իրենց շեղել մարքս-լենինյան ուղուց։ Խորհրդակցության մասնակիցները պահանջե-

ցին այսուհետև ևս շարունակել վճռական պայքարն ընդդեմ ռևիզիոնիզմի, որը շարունակում է մնալ գլխավոր վտանգ, ինչպես նաև ընդդեմ դոգմատիզմի ու աղանդավորության, որոնք նույնպես կարող են դառնալ գլխավոր վտանգ առանձին պարտիաների զարգացման այս կամ այն էտապում, եթե նրանց դեմ հետևողական պայքար չմղվի։ Այն պայմաններում,— ընդգծված է Հայտարարության մեջ,— երբ իմպերիալիստական ռեակցիան միավորում է իր ուժերը կոմունիզմի դեմ պայքարելու համար, հատկապես անհրաժեշտ է ամեն կերպ համախմբել համաշխարհային կոմունիստական շարժումը։ Միասնությունն ու համախմբվածությունը բազմապատկում են այդ շարժման ուժերը և ստեղծում են կոմունիզմի մեծ գործի հաղթական առաջընթացի ու թշնամիների բոլոր գրոհները ետ մղելու հուսալի երաշխիք։

Մոսկվայի Խորհրդակցության մասնակիցները հատկապես ընդգծեցին, որ միջազգային կոմունիստական և բանվորական շարժման միասնությունը շարունակ ամրապնդելու հոգատարությունը մարքս-լենինյան յուրաքանչյուր պարտիայի բարձրագույն ինտերնացիոնալ պարտքն է։

Մոսկվայի Խորհրդակցության արդյունք-



ները հանդիսանում են կոմունիստական և բանվորական պարտիաների, միջազգային բանվորական շարժման համերաշխության, նրանց ինտերնացիոնալ միասնության վառ վկայությունը։



Սովետական ժողովուրդը, սոցիալիստական լագերի մյուս երկրների ժողովուրդները և ամբողջ աշխարհի միլիոնավոր խաղաղասեր մարդիկ մայիսյան տոնը դիմավորում են խաղաղության ամրապնդման համար պայքարի նոր հաջողությունների պայմաններում։ Ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդման գործում վիթխարի նշանակություն ունեցավ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 15-րդ սեսիայում Սովետական Միության պատվիրակության գործունեությունը, որը գլխավորում էր ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովը։ Այդ սեսիային ՍՍՌՄ-ի առաջարկով մասնակցեցին նաև սոցիալիստական և մի շարք այլ երկրների դելեգացիաները՝ այդ պետությունների ականավոր գործիչների գլխավորությամբ։ Դրանով իսկ սեսիայի աշխատանքների վրա կենտրոնացվեց համաշխարհային հասարակայնության ուշադրությունը։ ՄԱԿ-ի Գլխա-

վոր Ասամբլեայի սեսիայում Սովետական կառավարության անունից ընկ. Խրուշչովի առաջարկները ընդհանուր և լրիվ զինաթափման, գաղութային սիստեմի լրիվ վերացման, ՄԱԿ-ի կազմակերպությունների կառուցվածքում փոփոխություններ մտցնելու մասին արժանացան ամբողջ աշխարհի խաղաղասեր ուժերի ջերմ համակրանքին։

ՍՍՌՄ-ի և սոցիալիստական բոլոր երկրների դելեգացիաների ջանքերով սեսիան բանաձև ընդունեց գաղութային սիստեմի վերացման մասին։ ՍՍՌՄ-ի, սոցիալիստական բոլոր երկրների ակտիվ, խաղաղասիրական արտաքին քաղաքականությունն է՛լ ավելի բարձրացրեց նրանց միջազգային հեղինակությունը, արժանացավ բոլոր ժողովուրդների ընդհանուր ճանաչմանը։

Երկրագնդի բոլոր մասերում մարդիկ ավելի ու ավելի պարզորեն են տեսնում խաղաղության ու ազատության համար, պատերազմի իմպերիալիստական հրձիգների դեմ, գաղութային խայտառակ սիստեմի լիակատար վերացման համար պայքարի ուղին։

Հակառակ խաղաղասեր ուժերի ջանքերի իմպերիալիստական պետությունները՝ ՆԱՏՕ-ի և ագրեսիվ ռազմական մյուս խըմ-



բավորումների անդամները, շարունակում են սպառազինությունների մրցավազքը, ընդլայնում են պատերազմական պատրաստությունները, ձգտում են ռազմական նոր բազաներ ստեղծել Եվրոպայում և մյուս աշխարհամասերում, մեծացնում են հրթիռային զենքի պաշարները, ՆԱՏՕ-ն վեր են ածում ատոմային չորրորդ տերության։

Իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը շարունակում են խոչընդոտել միջազգային իրադրության առողջացմանը, ամեն կերպ ձախողում են ընդհանուր և լրիվ զինաթափման պրոբլեմի լուծումը։

Ագրեսիվ իմպերիալիստական շրջանները կատաղի ջանքեր են գործադրում, որպեսզի խոչընդոտեն ժողովուրդների շարժումը խաղաղության, դեմոկրատիայի և առաջադիմության ճանապարհով։ Իմպերիալիստական տերություններն ավելի ու ավելի հաճախ են դիմում ուղղակի ռազմական ուժի, ձգտելով ճնշել աճած ազգային-ազատագրական շարժումը Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի երկրներում, որի մասին վկայում են գաղութարարների արյունալի չարագործությունները Կոնգոյում, Ալժիրում, Լաոսում, ինչպես նաև չդադարող

պրովոկացիաները Կուբայի Ռեսպուբլիկայի դեմ։

Իմպերիալիստական ռեակցիոն ուժերը ՄԱԿ-ում իրենց գործակալ Համարշելդի անմիջական ղեկավարությամբ բելգիական գաղութարարների ու նրանց ստոր գործակալների ձեռքով գազանաբար սպանեցին Կոնգոյի օրինական կառավարության ղեկավար, ազգային հերոս Պատրիս Լումումբային և նրա մարտական զինակիցներին, որը առաջ բերեց ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկության ցասումնալից բողոքը։

Ֆրանսիական գաղութարարներն արդեն մի քանի տարի է, ինչ շարունակում են ագրեսիվ պատերազմը ազատության ու անկախության համար պայքարող Ալժիրի հերոսական ժողովրդի դեմ։

ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստական ուժերը հանցավոր գործարքի մեջ են մտել արևմտա-գերմանական իմպերիալիզմի հետ, վերածնել են միլիտարիզմը, արագորեն վերականգնում են արևմտա-գերմանական բանակը՝ հիտլերյան գեներալների հրամանատարությամբ և այն զինում հրթիռա-միջուկային զենքով ու մասսայական ոչնչացման մյուս նորագույն միջոցներով։ Արևմտյան Գերմանիային ռազմական բազաներ են տրամադրվում ուրիշ երկրների տերիտորիաներում։ Այս ամենը ավելի սանձարձակ է դարձնում պատերազմի մոլուցքով լցված արևմտա-գերմանական ռևանշիստներին։ Արևմտյան Գերմանիան վեր է ածվում Եվրոպայում պատերազմական վտանգի գլխավոր օջախի։

Պատերազմի մեկ ուրիշ վտանգավոր օջախ է ստեղծվում Հեռավոր Արևելքում՝ Ճապոնիայում։ Սակայն որքան էլ ճգնեն իմպերիալիզմի ագրեսիվ ուժերը, նրանց չի հաջողվի նոր համաշխարհային պատերազմ սանձազերծել։

Սոցիալիստական երկրները չեն դադարեցնի ջանքերը հօգուտ ընդհանուր ու լրիվ զինաթափման, սպառազինության մրցավազքի դադարեցման, միջազգային լարվածության վերացման։ Համաշխարհային սոցիալիստական լագերի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման միացյալ ջանքերով, պատերազմի դեմ հանդես եկող բոլոր երկրների և բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով համաշխարհային պատերազմը կարելի է կանխել։ Ներկայումս պատերազմի ճակատագրական անխուսափելիություն գոյություն

չունի։ Խաղաղության հզոր ուժերն անպայման կհաղթեն պատերազմի ուժերին։



Սովետական ժողովուրդն ընթանում է դեպի ՍՄԿՊ հերթական XXII համագումարը։ Համագումարի հրավիրման մասին պարտիայի Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը մեծ խանդավառությամբ ընդունվեց պարտիայի և ամբողջ սովետական ժողովրդի կողմից։ Այն քաղաքական և աշխատանքային ակտիվության նոր վերելք է առաջ բերել։ Համագումարը պետք է ընդունի նոր ծրագիր, որը մեր պարտիային և սովետական ժողովրդին կզինի գաղափարական հզոր զենքով կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում։

Նախատոնական այս օրերին սովետական ժողովուրդը, ոգեշնչված ՍՄԿՊ Կենտկոմի մայիսմեկյան կոչերով, ծավալել է լայն սոցիալիստական մրցություն՝ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները, յոթնամյակի երրորդ տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելու, պարտիայի XXII համագումարը տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերում նոր նվաճումներով դիմավորելու համար։

---



# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

## (թվեր և փաստեր)

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները շարունակում են հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարը դիմավորել աշխատանքային նոր հաջողություններով։ Կատարելով նախահամագումարյան սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, նրանք պլանից դուրս երկրին տալիս են մեծ քանակությամբ արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանք, նոր հաջողություններ նվաճում յոթնամյակի նորակառույցներում։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

Յոթնամյակի երրորդ տարվա առաջին եռամսյակի համախառն արտադրանքի արտադրության պլանը ռեսպուբլիկայում կատարված է 102,7 տոկոսով։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացել է 7 տոկոսով, իսկ Ժողտնտխորհի ձեռնարկություններում՝ 9 տոկոսով։

Երևանի արդյունաբերությունը գերակատարել է այս տարվա առաջին եռամսյակի պլանը։ Համախառն

արտադրանքի թողարկման առաջին եռամսյակի պլանը կատարված է 102,5 տոկոսով և պլանից դուրս ժողովրդական տնտեսությունն ստացել է մեծ քանակությամբ ավտոդողեր, մետաղահատ հաստոցներ, էլեկտրաշարժիչներ, քիմիական նյութեր և արդյունաբերական արտադրանքի այլ տեսակներ։

Նախահամագումարյան մրցության այս օրերին նոր եռանդով է աշխատում Երևանի մետաղյա իրերի գործարանի կոլեկտիվը։ Պլանով նախատեսված 80 հազարի փոխարեն կոլեկտիվն արտադրել է 108 հազար քառակուսի մետր ցանց և 120 հազարի փոխարեն 175 հազար զսպանակ։ Երկաթյա ցանց պատրաստող բանվորները գերակատարել են նաև ապրիլ ամսվա պլանները և այժմ աշխատում են մայիս ամսվա հաշվին։

Երևանի կոմպրեսորների գործարանի օդահավաքիչների ցեխում արդեն 85 տոկոսով աշխատատար գործողությունները կատարվում են ավտոմատ և կիսաավտոմատ սարքավորումների միջոցով։

Նախահամագումարյան մրցության մեջ նոր հաղթանակ տարան ռեսպուբլիկայի կոմերիտականներն ու երիտասարդները։ Էլեկտրաէներգիայի տնտեսման գծով նրանց ներկայացրած նորարարական առաջարկություններից 16-ը Ժողտնտխորհի և ՀԼԿԵՄ Կենտկոմի ժյուրիի կողմից ճանաչվել է ամենաարժեքավորը։



Այդ առաջարկությունները տարեկան կտան էլեկտրաէներգիայի 10 միլիոն կիլովատ-ժամ խնայողություն։

Այս օրերին բարձր արտադրողականությամբ է աշխատում Երևանի կարի № 1 ֆաբրիկայի կոլեկտիվը։ Գերակատարված է այս տարվա առաջին եռամսյակի պլանը 3,7 տոկոսով։

Մեծ են աշխատանքային հաջողությունները Արթիկտուֆի հանքերում։ Նախատեսված 102 հազար խորանարդ մետր վարդագույն տուֆի փոխարեն յոթնամյակի նորակառույցներն է ուղարկվել 107 խորանարդ մետր։ Արթիկտուֆի կոլեկտիվը եռամսյակի պլանը կատարել է ժամկետից 6 օր շուտ։

«Հայմառմառ» կոմբինատի կոլեկտիվը ժամկետից 5 օր շուտ կատարել է առաջին եռամսյակի համախառն արտադրանքի պլանը և պլանից դուրս երկրին տվել ութ հազար ռուբլու արտադրանք։ Առաջին եռամսյակի ընթացքում տնտեսվել է 6 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում հաջողությամբ ավարտվել է երկրորդ սինխրոն շարժիչի մոդեռնացումը։ Տեխնիկական այս կատարելագործման շնորհիվ գործարանը տարեկան կստանա 425 հազար ռուբլու օգուտ։

Նոր ագրեգատ է շահագործման հանձնվել Երևանի ավտոդողերի գործարանում, որի շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 20 տոկոսով։

Երևանի կաբելի գործարանի էմալապատման ցեխում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 62 տոկոսով, շնորհիվ այն բանի, որ արտադրության մեջ ներդրվել է նոր սարքավորում։

Լենինականի էլեկտրաքարշային դեպոյի կոլեկտիվը առաջին եռամսյակում նոր հաջողությունների հասավ։ Դեպոյի մեքենավարները մեկ ամսում վարել են 260 ծանրաքարշ գնացք և պլանից դուրս փոխադրել 41.600 տոննա ժողովրդա-տնտեսական բեռ։

Առաջին եռամսյակը աշխատանքային աչքի ընկնող հաջողություններով փակեցին Լենինականի շոգեքարշային դեպոյի մեքենավարները։ Նախատեսված պլանից դուրս նրանք փոխադրել են 22.400 տոննա ժողովրդա-տնտեսական բեռ և տնտեսել, զգալի քանակությամբ վառելանյութ։

Եռամսյա առաջադրանքը բարձր ցուցանիշներով է կատարել Լենինականի ավտոպահեստամասերի գործարանի կոլեկտիվը։ Ժամկետից շուտ է կատարված ոչ միայն եռամսյակի արտադրական պլանը, այլև պլա-



նից դուրս կոլեկտիվը երկրին տվել է 28 հազար ռուբլու ավտոմասեր, տնտեսվել է 5 տոննա չուգուն, 40 տոննա բարձրորակ ձուլվածք։

Ջաջուռի կրի գործարանի կոլեկտիվը ժամկետից 10 օր շուտ է կատարել եռամսյակի պլանը և պլանից ավելի թողարկել 215 տոննա կիր։

Կիրովականի № 2 ավտոգրասենյակի կոլեկտիվը առաջին եռամսյակի առաջադրանքները կատարել է ժամկետից 9 օր շուտ և պլանից դուրս փոխադրել 7 հազար տոննա զանազան բեռներ։

Առաջին եռամսյակի պլանը ժամկետից շուտ է կատարել նաև Կիրովականի մուշտակի ֆաբրիկայի կոլեկտիվը և լրացուցիչ թողարկել 41 հազար ռուբլու մուշտակեղեն։

Սիսիանի շրջանի Տաղաթիի կոլտնտեսությունը այս տարվա երեք ամսում պետությանն է վաճառել 657 ցենտներ կաթ, եռամսյա պլանը կատարելով 159 տոկոսով։ Նույն շրջանի Նորավանի, Շաքիի կոլտնտեսությունները նույնպես նախատեսված պլանից ավելի կաթ են վաճառել պետությանը։

Նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ամենուրեք բուռն թափով ծավալվում է։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## Մայիսի Մեկը աշխատավորների միջազգային համերաշխության օրն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Նամակ «Հյուսիսային Միության»: *Երկեր, հատոր 6, էջ 204—205, Հայպետհրատ, 1949։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— «Մայիսի Մեկը» *(թերթիկի նախագիծ)։ Երկեր, հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— «Մայիսի Մեկը»: *Երկեր, հատոր 8, էջ 439—444, Հայպետհրատ, 1949։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զինաթափումը խաղաղության ամրապնդման և ժողովուրդների բարեկամության ապահովման ուղին է, *զեկուցում, արված ՍՍՌՄ Գերագույն Սովետի չորրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի հունվարի 15-ի և 16-ի համարներում։*

## Սովետական Վրաստանի 40 տարին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը մեր ուժն է, կոմունիզմի



*գալիք հաղթանակների գրավականը, ճառ, արտասանած Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, 1961 թվականի փետրվարի 7-ին, տպագրված «Ս. Հ»-ի 1961 թվականի փետրվարի 12-ի համարում։*

Սովետական Վրաստանի 40-ամյակին, *նյութեր, տպագրված «Ս. Հ»-ի 1961 թվականի ապրիլի 2-ի համարում։*

*Ի. Ա. ՋՈՏԵՆԻՁԵ—Պանծալի քառասնամյակը, հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 25-ի համարում։*

Սովետական Վրաստանի 40-ամյակը, *հոդված, տպագրված նշանավոր և հիշարժան տարեթվերի օրացույցում, էջ 38—41։*

## Մամուլի օրվա առթիվ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*—Մեր թերթերի բնույթի մասին: *Երկեր, հատոր 28, էջ 106—109, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները: *Երկեր, հատոր 27, էջ 237—259, Հայպետհրատ, 1951։*

Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին, *ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը, առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1960։*

Վ. ԿԱՐՊԻՆՍԿԻ— Լենինը որպես խմբագիր: *«Հիշողություններ Վլադիմիր Իլյիչ Լենինի մասին», մաս 1, Հայպետհրատ, 1957։*

## Բարձր ցուցանիշներով կատարենք ստանձնած պարտավորությունները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասնակիցների ողջույնը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 9-ի և «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի նույն թվականի 2-րդ համարներում։*

Լայն մրցություն ի պատիվ ՍՄԿԿ XXII համագումարի, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 28-ի առաջնորդողը։*

## Ավելի շատ հացահատիկ երկրին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— *Հացահատիկի* արտադրությունն ավելացնելու մասին, *ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումում արտասանած ճառից, տպագրված «Ս.Հ.»-ի 1961 թվականի հունվարի 21-ի համարում։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— Զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 15-ի համարում։*

Լիովին օգտագործել գյուղատնտեսության ռեզերվները, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 29-ի առաջնորդողը։*

---

Նշումների համար



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ն. ՕՐՋՈՆԻԿԻՁԵ—Թիֆլիսյան լուսաբաց, պատմվածքներ, 74 էջ, գինը 6 կ.։

Ս. ԲՈՐԻՍՈՎ—Պարտիան Սովետական իշխանության ամրապնդման ժամանակաշրջանում (օգնություն ՍՄԿՊ պատմության ուսումնասիրողներին), 168 էջ, գինը 18 կ.։

Գ. ԳՁՈՅԱՆ—Հայաստանի գյուղատնտեսության մեքենայացումը 40 տարում, 91 էջ, գինը 10 կ.։

ՀԱՅԵՐԵՆ ԳՐՔԵՐ—Կատալոգ։

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ—Տեխնիկական առաջադիմության ուղիով, 70 էջ, գինը 10 կ.։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 8 1961 г.

ՎՖ 00968 Պատվեր 203 Տպաքանակ 9.192

Հանձնված է արտադրության 7/IV 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 12/IV 1961 թ.։

Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II շարք, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը՝ 8 կոպ.